չունեցան քանդելու Աւստրիոյ գեղեցիկ մայրաքաղաքը: Գերմանները քաղաքին արեւելեան եւ հիւսիսային շրջանները քշուելով, կատաղօրէն կը կռուէին, բայց պաշտպանողները արդէն ցիրուցան եղած էր եւ կազմակերպուած դիմադրութիւնը դադրած: Մառէշալ Տոլպուխինի զօրքը հարաւէն դէպի Վիէննա սուրալով, անցաւ Դանուբը եւ մտաւ Լէօփոլտշթատ, գետին հիւսիսային ափին վրայ: Նոյնիսկ եթէ դիմադրութիւնը շարունակուէր, քաղաքին երեք չորրորդը մաքրուած էր արդէն: Գերման պաշտպանողքին մէկ մասը կը փորձէ դէպի Պրնօ նահանջել: Կարմիր բանակը այժմ պատրաստ է վճռական հարուածը տալու եւ գերման բանակը կազմալուծելու իբրեւ ռազմական ուժ, ինչպէս եղաւ Քէօնիկսպէրկի մէջ, ուր 92000 Գերմաններ գերի բռնուեցան հրամանատարին հետ: Սպանեալներուն թիւը կը հաշուէն 42000:

Ռուսերը գրաւեցին նաեւ Ցէլտպախը, Կրացի շրջանին մէջ:

Միեւնոյն օրը Դաշնակիցներն ալ Հանովրը գրաւեցին: Ամերիկացիները հարաւ-արեւելքէն յառաջ խաղալով, խզեցին հաղորդակցութիւնները: Միւս կողմէ անգլիական օդազօրքը քաղաքը զարկաւ անցաւ դէպի Համպուրկ, հասնելով կէս ճամբան՝ Հռենոսի եւ Պերլինի միջեւ: Կ՚ըսուի թէ կտրուած է Համպուրկ-Հանովրը գիծը: Զօր. Մոնթկոմըրի վճռական հարուած մը կը պատրաստէ Համպուրկի համար: Վտանգի տակ է նաեւ Էմտէնը, մեծ նաւահանգիստ մը Հիւսիսային ծովուն վրայ: Քասէլի հարաւային-արեւելեան կողմէն Անգլիացիները կը սպառնան Էրֆուրթի, մօտենալով Սաքսոնիոյ որ արեւելքէն ալ վտանգուած է կարմիր բանակին կողմէ: Ֆրանսական Ա. բանակը խզեց Զիկֆրիտի գիծը, Քարլսրուհէի հարաւէն:

Իտալական ճակատին վրայ եւս Դաշնակիցները շարժիլ սկսած են, երեք ամսուան դադարէ մը վերջ, յառաջ խաղալով դէպի Փոյի հովիտը: Կատաղի ճակատամարտներ կը սպասուին այս շրջանին մէջ: Ուրիշ բանակ մը կը յառաջանայ դէպի Սփէցիա, զինուորական մեծ նաւահանգիստը: Դաշնակից օդանաւերը 3400 պայթուցիկ ռումբ թափեցին ճակատի զանազան կէտերուն վրայ:

## ՆՈՐ ԴԱՒ ՄԸ ԵՒ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ

Տեղական թերթերը կը գրեն թէ առենէ մը ի վեր զանազան մարդիկ թռուցիկներ կը ցրուէին, ապստամբութեան հրաւիրելով Ֆրանսացիները Փարիզի շրջանին եւ գաւառի մէջ: Կարգ մը մարդիկ, որոնք իրենք զիրենք օդանաւային սպայ կը կոչէին —ոմանք համազգեստ ալ ունէին— կը մասնակցէին այս թռուցիկներուն պատրաստութեան եւ բաշխումին: Օդանաւային ոստիկանութիւնը ձերբակալեց մօտ 15 հոգի: Կարգ մը թռուցիկներ կը հրաւիրէին երիտասարդները լեռը բարձրանալ նորէն, այն պատրուակով թէ դիմադրական շարժումը ձախողած է: Ուրիշներ կը թելադրէին ժողովուրդին բռնել պարենաւորման բռնակառքերը եւն.:

Կը կարծուի թէ այս նոր դաւը կապ ունի այն փորձին հետ զոր կատարած են Տորիոյի կուսակիցները, վերակազմելու համար P. P. F.ն: Այս վերջին դաւադիրներէն 17 հոգի ձերբակալուած էին առաջին առթիւ: Կիրակի իրիկուն, Սէն-Միռ Լ՚Էքօլի ոստիկան-զօրքը ձերբակալեց երկու հոգի որոնք ինքնաշարժ մը կը քշէին: Մէկը յայտարարեց թէ տեղակալ է ֆրանսական բանակին մէջ: Կառքին մէջ գտնուեցան զէնքեր եւ թռուցիկներ: Այս բոլոր կալանաւորները ամբաստանուած են իբրեւ դաւադիր պետութեան ապահովութեան դէմ:

*** Օդանաւային նախարարութիւնը պաշտօնական զեկոյց մը հրատարակեց, ուր կ՚ըսէ թէ կարգ մը թերթեր սխալ տեղեկութիւններ հրատարակած են, այնպէս կարծել տալով թէ նախարարութեան մը աշխատակիցներուն մէջ կը գտնուէին անհատներ որոնք մահափորձ մը կը պատրաստէին բարձր անձնաւորութեան մը դէմ եւ դասալքութեան կը հրաւիրէին զօրքը: Օդանաւային նախարարութիւնը կը յայտարարէ թէ խնդիրը կը վերաբերի քանի մը ինքնակոչ սպաներու եւ ենթասպաներու որոնք կեղծ թուղթեր ունէին, ապացուցանելու համար թէ F. F. I. աստիճանաւորներ են: Այս դրդիչները անմիջապէս դիմակազերծ ըլլալով ձերբակալուած են եւ խնդիրը հաղորդուած է ներքին նախարարութեան:

*** Վիշիի պահակներէն (միլիսիէն) չորս հոգի 1944 յուլիսէն ի վեր պահուած էին Անըսիի Տրափեան աբբայարանին մէջ, կեղծ թուղթեր ներկայացնելով: Երկուքը յաջողած են փախչիլ, երրորդը, որ ամբաստանուած է թէ 12 հայրենասէրներ աքսորել տուած էր, ձերբակալուեցաւ վանքին մէջ, իսկ չորրորդը՝ գիւղի մը մէջ:

ԱՄՈՒՍՆԱԼՈՒԾՄԱՆ դիմումներու համար Վիշիի կառավարութիւնը երեք տարի պայմանաժամ սահմանած էր 1941ին: Նախարարական խորհուրդը ջնջեց այս որոշումը:

## Ի՞նչպէս կ՚օգնեն

Ամերիկայի Հայ Կ. Խաչը տասը հազար տոլար տրամադրելով Խ. Հայաստանի, դեղեր, բուրդէ վերմակներ եւ հանդերձեղէն ղրկած է Երեւան, Րաշըն Ուօր Րըլիֆի միջոցաւ (ռուսական պատերազմի օգնութեան մարմին):

Աւելի առաջ ալ, Կ. Խաչի Պատգմ. Ժողովը նոյնպէս տասը հազար տոլար դրամ ղրկած էր Ուաշինկթընի խորհրդային դեսպանատան միջոցաւ: Այս առթիւ *Հայրենիք* հետեւեալ խորհրդածութիւնները կ՚ընէ.

*«Աւելորդ է ըսել, թէ Խորհրդային Հայաստան ոչ թէ ամերիկեան դրամին, այլ ամերիկեան յիշեալ ապրանքներուն ստիպողական պէտքն ունի: Ուստի Հայ Կ. Խաչի Կեդր. Վարչութիւնը շատ աւելի նպատակայարմար քայլ մը առած է, երբ այս տարի դրամի փոխարէն ապրանք է ղրկած Խ. Հայաստան:*

*Ճիշդ է, թէ ամերիկեան «Լէնտ-Լիզ» (փոխվարձ) միջոցով Խորհրդային Միութիւնը կը ստանայ մեծ քանակութեամբ ինչպէս զէնք ու ռազմամթերք, այնպէս ալ հագուստեղէն, դեղօրայք եւ ուտելիք: Ճիշդ է, թէ Րաշըն Ուօր Րիլիֆը, աւանց մեզի ալ, չօշափելի օգնութիւն մը կ՚ընէ արդէն այդ ուղղութեամբ: Եւ ճիշդ է նոյնպէս, որ այդ առաքումներէն որոշ չափով կ՚օգտուի նաեւ Խորհրդային Հայաստանը, իբրեւ Խորհրդային Միութեան մէկ մասը:*

*Սակայն, կարիքը մեր մայր երկրին մէջ այնքա՜ն մեծ է, որ Հայ Կ. Խաչի օգնութեան ալ պէտք կայ: Մոռնալու չէ, որ Խ. Հայաստան 250000էն աւելի զինուորներ է տուած Կարմիր Բանակին եւ հսկայական տուրք մը տուած է ու կու տայ Խորհրդային Միութեան պատերազմական ընդհանուր ճիգին: Հետեւաբար, վառ երեւակայութեան պէտք չկայ պատկերացնելու համար, թէ մեր մայր գանձուածն այժմ ի՛նչ մեծ կարիք ունի այն բոլոր նիւթրուն, զոր Հայ Կ. Խաչի Կեդր. Վարչութիւնը ղրկած է Հայաստան:*

*Դժբախտաբար, կանոնաւոր կերպով Հայաստանէն մենք չենք ստանար թերթեր եւ այն պատահական թիւերն ալ, որ մեր ձեռքը կ՚անցնին, գրեթէ ոչինչ կ՚ըսեն Հայաստանի ներքին վիճակի եւ հայ ժողովուրդի ներկայ կարիքներու մասին: Արտասահմանի հայ թերթերուն ղրկուած թղթակցութիւններն եւս այդ ուղղութեամբ ոչինչ կ՚ըսեն:*

*Անիկա, հարկաւ, չի նշանակեր, թէ Հայաստանի ժողովուրդը այսօր կարօտ վիճակի մը մէջ չէ: Պէտք է նկատի ունենալ, որ Խորհրդային թերթերը, մանաւանդ պատերազմի առեն, սովորութիւն չունին բնաւ իրենց երկիրներու կարիքներու եւ պակասներու մասին խօսելու: Բայց ատիկա պատճառ մը չէ, որ մենք միամտութիւնն ունենանք խորհելու, թէ, ուրեմն, Խորհրդային Հայաստան պէտք չունի այժմ մեր օգնութեան»:*

—o—

Լիբանանի Հայ Օգնութեան Խաչը (քոյր՝ Կապոյտ Խաչի), հետեւեալ գործերը կատարած է **1944**ի տարեշրջանին.—

Ա. «Պնակ մը կերակուրը».— *Անցած տարի, շաբաթը չորս անգամ 800 դպրոցական աշակերտներ տաք կերակուր ստացած են եւ այս շարունակուած է 7 ամիս:*

*Այս ձեռնարկին Օգն. Խաչը ծախսած է 10800 լիբանանեան ոսկի:*

Բ. Այնճարի Մայրանոցը.— *Ամերիկայի Հայ Կ. Խաչի օժանդակութեամբ եւ Բարեգործական Ընկերութեան մասնակցութեամբ ձեռնարկուեցաւ Մայրանոցի շինութեան Այնճարի մէջ: Օգն. Խաչը տրամադրեց 6550 լ. ոսկի այդ ձեռնարկին:*

Գ. Դարմանատուն.— *Տարիներէ ի վեր Օգն. Խաչի դարմանատունը բաց կը մնայ հայաշատ թաղերու կեդրոնը: Բժշկական օգնութիւն, դեղերու բաշխում, հիւանդներու հիւանդանոցներումէջ տեղաւորում Օգն. Խաչի վրայ ծախք եղած են 3700 լ. ոսկի:*

Դ. Կրթական օժանդակութիւն.— *Դպրոցներուն եւ չքաւոր աշակերտներուն տրուած կրթական օժանդակութիւնը կը հասնի 4000 լ. ոսկիի:*

Ե. Աշակերտներուն կօշիկ.— *Անցած տարի դպրոցական աշակերտներունբաշխուած են500է աւելի կօշիկներ, դպրոցական իրեր եւլն., մօտ 3000 լիբ. ոսկիի:*

Զ. Օդափոխութեան կայան.— *Անցած տարի 60է աւելի տկարակազմ երախաներ Զահլէի կազդուրման կայանը տարուեցան եւ երկու ամիս խնամուեցան: Օգն. Խաչը այդ առթիւ ծախսեց 5000 լ. ոսկի:*

Է. Այլեւայլ օժանդակութիւններ.— *Օգն. Խաչը ստիպուած է անոք ծերերուն, կիներուն, հիւանդներուն, ճամբորդներուն եւ նիւթական ծանր վիճակ ունեցողներուն անմիջական օգնութիւններ ընել: Այս գլուխին տակ Օգն. Խաչը մօտ 5000 լ. ոսկիի նպաստներ տուած է մեր հայրենակիցներուն:*

ԲԱԺԱՆՈՐԴ ԳՐՈՒԵՑԷՔ,
ԱՊԱՀՈՎ ՍՏԱՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ ՁԵՐ ԹԵՐԹԸ

## Համակրանք «Յառաջ»ի

Թանկագին անակնկալ մը: Յառաջի հաւատարիմ ընթերցող մը, Պ. Հրանդ Տրէզեան, համեստ աշխատաւոր եւ վարպետ կահագործ, ամերիկեան փառաւոր գրասեղան մը շինելով, փոխադրած է «Յառաջ»ի խմբագրատունը, իբրեւ «սրտագին նուէր»: Գրասեղանին հետ ալ՝ ձօն մը սրտառուչ.

«Յառաջ»ը թող խմբագրուի այս սեղանին վրայ,
Եւ թող «Յառաջ»ը ըլլայ մեր սեղանին վրայ:

Խորին շնորհակալութիւն: Բայց ի՛նչ պերճանք, «Յառաջ»ի անշուք խմբագրատան համար որ վերէն վար յարդարման կը կարօտի:

*** 1939ի պատերազմին յայտարարութենէն անմիջապէս վերջը եւ մինչեւ զինադադար, «Յառաջ»ի խմբագրութիւնը ամէն օր թերթ կը ղրկէր մեր զինուորներուն, զինուորական իշխանութեան բարեհաճ արտօնութեամբ:

Այդ զինուորներէն Պ. Դաւիթ Փաշայեան (Ալֆորվիլ), պարտք սեպեր է 500 ֆրանք ղրկել, «ի նշան երախտագիտութեան»: Շնորհակալութիւն:

*** Նուէրներու Գ. ցանկը յաջորդով: Բաժնեգիններու ստացումը պիտի ծանուցանենք հետզհետէ, փոխան ստացագրի:

—o—

ՈՂՋՈ՜ՅՆ ՍԻՐԵԼԻ «ՅԱՌԱՋ»ԻՆ

Կիրակի, 8 Ապրիլ, կէսօրէ վերջ կը պտտէի Սէն Միշէլի պողոտային վրայ: Մօտեցայ լրագրավաճառի մը կրպակին, ֆրանսերէն թերթ մը գնելու համար, եւ մեծ եղաւ հրճուանքս ու յուզումս, երբ տեսայ, սիրելի Յառաջ, քու հրեղէն անունդ: Անմիջապէս գնեցի եւ խանդաղատանքով սկսայ կարդալ «Մեր Խօսքը» եւ մնացեալը: Թանկագին ու վաղեմի բարեկամի մը ձայնն էր որ կը լսէի, չորս տարուան բաժանումէ մը վերջը:

Ըլլալով մէկը այն հազարաւորներէն, — Ապրիլեան Սերունդ — 1926էն ի վեր ընթերցող քեզի, դուն, «Յառաջ», եղար իմ որբ սերունդիս հարազատ ու անկեղծ բարեկամն ու պաշտպանը: Դուն մեզի սորվեցուցիր առողջ հայրենասիրութիւնը, մեզի սիրել տուիր հայկական մշակոյթն ու գրականութիւնը, ու մեր յիսնամեայ ազգային պատմութիւնը: Ու մանաւանդ, դուն ախոյեանը հանդիսացար հայկական սրբազան Դատին: Ֆրանսահայ գաղութը եւ հայրենասէր ու ազատատենչ հայ երիտասարդութիւնը անձկութեամբ կը սպասէին քու տաքուկ խօսքին:

«Յառաջ»ի վերհրատարակութեամբ գաղութը ահա նորէն կ՚ունենայ իր սիրելի ու ժողովրդական օրաթերթը:

Վստահ եմ, ինչպէս պատերազմէն առաջ, ասկէ վերջն ալ պիտի ըլլաս անվկանդ ուղեցոյցը ֆրանսահայութեան, բաժնելով անոր ուրախութիւններն ու տառապանքը:

Կը մաղթեմ քեզի, սիրելի «Յառաջ», յաջողութիւն, ու նորանոր նուաճումներ: Ապրիլեան սերունդը իր անվերապահ բարոյական ու նիւթական աջակցութիւնը կը բերէ քեզի:

Լորիս Բաքանեան

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԶՕՐ. ՏԸԼԱԹՐԻ դէմ մահափորձ մը կատարուած է Ալզասի մէջ, Խս-Խսներու վեց անդամներու կողմէ, որոնք Հռենոսի կամուրջը պայթեցնելով յարձակած են հրամանատարի բանակատեղիին վրայ: Ոստիկանութիւնը ձերբակալած է դաւադիրներէն հինգը:

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՆ Վիշիի պահակներէն չորս հոգի, իբրեւ հեղինակ «Տէփէշ տը Թուլուզ»ի տնօրէն Մորիս Սառոյի սպանութեան: Ուրիշ չորս հոգի ալ մահուան դատապարտուեցան ի բացակայութեան:

ԴԱՇՆԱԿԻՑ ՕԴԱՏՈՐՄԻՂ ՄԸ առջի օր խորտակեց 220 գերման սաւառնակներ, օդին մէջ կամ գետնի վրայ, ինչ որ մրցանիշ մը կը համարուի: Անցեալ սեպտ. 5ին բարձրագոյն թիւն էր 177:

ԿԱՐԳ ՄԸ ՉԷԶՈՔ ԵՐԿԻՐՆԵՐ կ՚ուզէին մասնակցիլ Սան Ֆրանչիսկոյի խորհրդաժողովին, իբրեւ դիտող: Դաշնակիցները մերժեցին:

ԸՆԴԾՈՎԵԱՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ վտանգը անհետացած չէ տակաւին, համաձայն Անգլիոյ ծովային նախարարին յայտարարութեան: «Պէտք է արթուն կենանք մինչեւ Գերմանիոյ վերջնական խորտակումը»:

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ
ԵՒ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ
ՍՈՐՊՈՆԻ ՄԵԾ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

Հայ Գրողներու Ընկերակցութիւնը կազմակերպած է փառատօն մը (festival) հայ բանաստեղծութեան եւ երաժշտութեան, որ տեղի պիտի ունենայ Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ այս կիրակի, Ապրիլ 15, ժամը 14.15էն 18: Հանրային Կրթութեան նախարար Պ. Ռընէ Քափիթան իր բարձր հովանաւորութիւնը շնորհած է:

Մանրամասնութիւնները յաջորդով:

Le Gérant : H. AGONEYAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e

նը կ'ըսէ թէ Ամերիկացիները ուրիշ կէտէ մըն ալ անցան Էլպա գետը, Պերլինի հարաւ-արեւմտեան կողմէն: Ամերիկեան անթելին համաձայն, 9րդ բանակը ամենածանր դիմադրութեան հանդիպած է Էլպայի ճակատին վրայ: Ամերիկեան Ա. բանակը կը սպառնայ Հալլէի եւ Լայփցիկի:

Անգլիական Բ. բանակը յառաջ խաղալով դէպի Էլպայի գետաբերանը, հասաւ կարեւոր կէտ մը՝ Համպուրկի հարաւակողմը: Ուրիշ զօրամասեր ալ կը մօտենան մեծ նաւահանգիստին: Գերմանները կատաղի դիմադրութիւն մը կը ցուցնեն Պրէմէնի եւ Օլտէնպուրկի մէջ: Վերջին լուրերու համաձայն, Ռուրի շրջանին մէջ գերմանական վերջին դիմադրութիւնը ինքնին կը փլի: Տորթմունտը մաքրուած է: Այս շրջանին մէջ Գերմաններուն բռնած տեղը նախկին տարածութեան մէկ տասներորդն ալ չի կազմեր:

Ֆրանսական Ա. բանակը գրաւեց Քէհլը, որով Սթրազպուրկը կ'ազատի ամէն վտանգէ: Ֆրանսացիները գրաւած են աւելի քան 50 վայրեր: Պաշտօնական զեկոյցը կ'ըսէ թէ կազմալոյծ թշնամին իր ետին կը ձգէ ահագին քանակութեամբ ռազմանիւթ եւ պաշար եւ բազմաթիւ գերիներ: Ռուրի մէջ գերի բռնուած են աւելի քան 100000 հոգի:

### ԻՆՉՊԷՍ ՊԻՏԻ ԼՍԵՆՔ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՎԱԽՃԱՆԸ

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ հաւանական է որ Զօր. Այզընհաուըր եւ մարէշալ Սթալին յաղթանակը ծանուցանեն դիմադրութեան վերջին խորշերը մաքրելէ առաջ: Երկու բանակները իրարու կը մօտենան արագօրէն: Մօտ է այն ժամանակը երբ զօր. Այզընհաուըր պիտի ըսէ Սթալինի. — « Մեր կրցածին չափ Գերմաններ ոչնչացուցինք »: Եւ մարէշալ Սթալին ալ նոյնը պիտի կրկնէ: Այն ատեն եւրոպական գլխաւոր պատերազմը վերջացած պիտի համարուի, եթէ նոյնիսկ Գերմանները շարունակեն դիմադրել «ազգային միջնաբերդին մէջ», Պավարիոյ լեռներուն վրայ, Պէրխթէսկատէնի շուրջը կամ Նորվեկիոյ մէջ: Վերջին տեղեկութեանց համաձայն, Հիթլէր անգամ մըն ալ սխալեցաւ իր հաշիւներուն մէջ, ստորադնահատելով Դաշնակիցներուն յարձակման ուժը արեւմուտքէն: Դաշնակից բանակները սրընթաց յառաջ խաղալով, կը սպառնան Ռուսերուն դէմ կռուող գերման բանակներու կռնակէն: Եթէ նոյն իսկ Հիթլէր վերջին պահուն փորձէ տեղափոխել կարգ մը զօրաբաժիններ արեւելեան ճակատին վրայ, իր փոխադրական միջոցները այնպիսի քաոսային վիճակ մը ունին որ մեծ դժուարութեանց պիտի հանդիպի: Գրեթէ վերջացած կը համարուի գաղտնի զէնքերու սպառնալիքը Անգլիոյ վրայ: Ուրիշ խնդիր, եթէ Գերմանները շատ հեռուները հասնող թռչուն ռումբեր գործածեն: Դաշնակիցները արդէն գրաւած են կարգ մը գործարաններ որ գաղտնի զէնքեր կը շինէին: Հետզհետէ աւելի անհաւանական կը համարուի որ Գերմանները կազային պատերազմ փորձեն:

Գերմանիոյ Նախարարները, որոնք երկրին կեդրոնը փոխադրուած էին, այժմ նորէն կը տեղափոխուին դէպի հարաւ, իբրեւ հետեւանք Դաշնակիցներու յառաջխաղացութեան: Մասնագէտներու կարծիքով, Պերլինը կրնայ ժամանակ մը պաշտպանուիլ իբրեւ ամրոց, եթէ նոյնիսկ պաշարուի: Հոլանտայի մէջ պաշարուած զօրքն ալ կրնայ ատեն մը դիմանալ: «Մարդագայլերը» կրնան որոշ նեղութիւն պատճառել գիծերուն ետին, նաեւ արձակազէնները կրնան հրոսակային կռիւներ մղել իրենց թաքստոցներէն: Բայց այս բոլորը այլեւս անօգուտ կը համարուին զինուորական տեսակէտով:

*** « Տէյլի Մէյլ » կ'իմանայ թէ գերման կառավարութիւնը արգիլած է օտար դեսպաններուն եւ ներկայացուցիչներու եւ պաշտօնեաներու՝ երկրէն հեռանալ կամ մասնաւոր արձակուրդ խնդրել, նոյնիսկ առողջական պատճառներով: Այս հրամանը տրուած է, կարգ մը չէզոք եւ զինակից դեսպաններու հեռանալէն վերջը: Զինուորական վարչութիւն յայտարարուած է Պերլինի մէջ:

*** Դաշնակից բանակները Իտալիոյ մէջ ալ ուժգնօրէն կը հետապնդեն թշնամին, որ միշտ կը նահանջէ:

Արեւելեան ճակատին վրայ, կարմիր բանակը յառաջ կը խաղայ դէպի արեւմուտք, Դաշնակիցներուն միանալու համար: Երեք ռուս մարէշալներ, Ռոքոսովսկի, Ժուքով եւ Կոնիեւ ընդհ. յարձակողական մը կը պատրաստեն: Այս ճակատը բոլոր ուժերը լարած է եւ ժամէ ժամ կը սպասուի վճռական հարուածին: Գերմանները կը կարծեն թէ երեք ռուս հրամանատարները պիտի միանան դէպի Պերլինի արշաւանքին համար, գործածելով Հիթլէրի շինել տուած ճամբաները: Պերլինի մէջ ռուսական նոր յարձակումի մը կը սպասուի նաեւ Սաքսոնիոյ մէջէն, միանալու համար զօր. Փէթընի զրահապատ զօրամասերուն: Գերման հրամանատարութիւնը տագնապի մատնուած է նաեւ հարաւային շրջանին մէջ, քանի որ խորտակուած են Դանուբի հովիտին ամրութիւնները: Ռուսական բանակը այժմ ուղղակի կը քալէ Պավարիոյ սահմանին վրայ, դէպի Հիթլէրի վերջին միջնաբերդը: Աւստրիացի հայրենասէրներ, — բանուոր, ուսանող, համայնավար, քրիստոնեայ ընկերվարական, կաթոլիկ եւն. զէնք ստացան, Գերմաններուն դէմ կռուելու համար: Եուկոսլավիոյ մէջ ալ կռիւները յաջողութեամբ կը շարունակուին, ղեկավարութեամբ մարէշալ Թիթոյի:

*** Ֆոն Փափէն, Գերմանիոյ հռչակաւոր դիւանագէտը, որ վերջին անգամ Անգարայի դեսպանն էր, գերի բռնուեցաւ Ռուրի մէջ, ամերիկեան 9րդ բանակին կողմէ: Իր զաւակն ալ բռնուեցաւ, ինչպէս եւ տանտէրը: Ֆոն Փափէն յայտարարեց գերի բռնող սպային. — «Կը մաղթեմ որ կարելի եղածին չափ շուտ վերջանայ այս պատերազմը»: — Տասնըմէկ ամերիկացի զինուորներ ալ նոյնը կը մտածեն, պատասխանեց ամերիկացի սպան:

***Վայմարի հիւսիսակողմը, ամերիկեան զօրքը շփման մէջ մտաւ խորհրդային բանակի մը հետ որ ափյափոյ կազմուած էր: Քսան հազար խորհրդային գերիներ գլուխ վերցնելով, գիւղ մը գրաւած էին, Ամերիկացիներուն միանալու համար:

*** Թերթերը կը գրեն թէ նախագահ Րուզվէլթ ծրագիր մը ձգած է Եւրոպայի ապագայ կազմակերպութեան համար, Չըրչիլի թելադրութեամբ: Կ'ըսուի թէ Անգլիոյ վարչապետը հրահանգած է Պ. Իտընի՝ խորհրդակցիլ Մ. Նահանգներու նոր նախագահին հետ, երեք մեծերը նոր ժողովի մը հրաւիրելու համար: Այս ժողովը պիտի գումարուի Եւրոպայի պատերազմը վերջանալէ անմիջապէս ետքը:

### 3500 ԹՈՆ ՌՈՒՄԲ ԺԻՌՕՆՏԻ ՎՐԱՅ

Ամերիկեան 1150 ռմբաձիգ օդանաւեր շաբաթ օր յարձակում գործեցին Ժիռօնտ գետի երկու ափերուն վրայ, Պոտոյի մեծ նաւահանգիստին բերանը: Միեւնոյն ատեն Ֆրանսական զօրքը յարձակեցաւ հրամանատարութեամբ զօր. Լաժինայի: Այս շրջանին մէջ մաս մը գերման զօրամասեր ամրացած՝ կը դիմադրեն անցեալ յունիսէն ի վեր: Պաշտօնապէս կը ծանուցուի թէ 3500 թոն ռումբ ձգուած է: Ռմբակոծութիւնը տեւեց երկու ժամ: Հինգ օդանաւեր կորսուեցան: Դիմադրող Գերմանները, որոնց թիւը 30000 կը հաշուեն, մինչեւ հիմա կը խափանեն նաւահանգստին մուտքը, մէկ կողմէ Ռուայանէն, միւս կողմէ Փուանթ տը Կռավէն: Անցեալ ամառ Պոտօ քաղաքը փրկուեցաւ գրեթէ անվթար, բայց թշնամին կառչած մնաց նաւահանգստի մուտքին, ծովուն կողմէն:

### ԾԱՆՐ ՏԱԳՆԱՊ ՄԸ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՄԷՋ

« Փարի-Փռէս »ի թղթակիցը հեռագրով մը նշանակալից տեղեկութիւններ կը հաղորդէ Երուսաղէմի կացութեան մասին: Մարտ 22ին Պաղեստինի բրիտանական մարզպանը, Լորտ Կորթ, դիտել տալով թէ քրիստոնեաները ներկայացուցիչներ չունին Երուսաղէմի քաղաքապետական խորհուրդին մէջ, անհրաժեշտ է երկու աթոռ սահմանել անոնց: Այդ պարագային Խորհուրդը պիտի բաղկանար վեց Իսլամներէ, վեց Հրեաներէ եւ երկու քրիստոնեաներէ: Գալով քաղաքապետին, որուն աթոռը թափուր կը մնար այն ատեն, մարզպանը կը յանձնարարէր որ կարգով ընտրուի իսլամ, հրեայ եւ քրիստոնեայ անդամներէն: Արդար եւ տրամաբանական որոշում, քանի որ Պաղեստինը միայն Հրեաներուն եւ Իսլամներուն սրբավայրը չէ, այլեւ մանաւանդ քրիստոնեաներուն:

Եւ սակայն, անմիջապէս բողոքներ տեղացին: Արաբները դիտել տուին թէ երկիր մը ուր իսլամները մեծամասնութիւն կը կազմեն, չի կրնար կառավարուիլ ոչ-իսլամներու կողմէ: Հրեաներն ալ կ'առարկեն թէ Երուսաղէմը նախ հրէական քաղաք մըն է, ուր իրենք կը վճարեն տուրքերու ամենամեծ մասը, հետեւաբար իրենց պէտք է ձգել քաղաքին վարչութիւնը: Արաբները եւ Հրեաները համաձայն են միայն մէկ կէտի վրայ — քրիստոնեաները պէտք է մասնակցին քաղաքապետութեան: Հարցը առկախ կը մնայ տակաւին:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԻՊԱԳԻՐ ԺՈՐԺ ՍԻՄԷՆՕՆ ամբաստանութեան տակ առնուեցաւ իբրեւ գործակից Գերմանիոյ:

1934Ի ԵՒ 1933Ի զօրադասերու Ֆրանսացի բժիշկները եւ բժշկական ուսանողները ծառայութեան պիտի կոչուին Ապրիլ 23էն սկսեալ:

ԵՐԿՈՒ ՄԻԼԻՈՆ ԳԵՐԻՆԵՐ ԵՒ ԱՔՍՈՐԱԿԱՆՆԵՐ արձակուած են մինչեւ հիմա, Դաշնակիցներուն կողմէ:

ՄՈՒՍՈԼԻՆԻ Հիթլէրի բանակատեղին գացած է, խորհրդակցելու համար Գերմանիոյ եւ Իտալիոյ եղերական կացութեան մասին, համաձայն զուիցերիական թերթերու տեղեկութեանց:

ՕԴԱՆԱՒՈՎ ՄԱՔՍԱՆԵՆԳՈՒԹԵԱՆ գործ մը կը զբաղեցնէ Լոնտոնի ոստիկանութիւնը եւ ամերիկեան օդանաւային հրամանատարութիւնը: Գաղտնի կազմակերպութիւն մը անգլիական օդատորմիղին յատուկ երիզներ գործածելով, ապրանքները կը փախցնէր մաքսատունէն: Բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուած են, բայց գլխաւոր վարիչները անյայտ կը մնան տակաւին: Մաքսանենգները դրամ կը ղրկէին Եւրոպա, սաւառնակներու միջոցաւ եւ ապրանք կը փոխադրէին Անգլիա, սեւ շուկայով ծախելու համար: Շատ անգամ օդանաւերը քանի մը վայրկեան գետնին մօտենալով, ապրանքները վար կը ձգէին, յետոյ կը հեռանային:

## ՀԱՅԿ. ԱՐՈՒԵՍՏԻ ՓԱՌԱՏՕՆԸ ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ

Հայ բանաստեղծութեան ու երգին նուիրուած փառատօնը, կազմակերպուած՝ Հայ Գրողներու Ընկերութեան անունով, կիրակի օր, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ, անցաւ մեծ յաջողութեամբ ու խանդավառ:

Ֆրանսայի Գրողներու Ընկերութեան նախագահ՝ ակադեմական Պ. Ժորժ Լըքօնթ, ալեհեր ու յարգուած գրագէտը, որ հինէն ի վեր հայկական դատին ի նպաստ շարժող ազնիւ Ֆրանսացի մտաւորականներէն է, հակառակ իր առողջական վիճակին, սիրով փութացած էր նախագահելու այս հայկական հաւաքոյթին: Իր բացման զգայուն ճառը պիտի հրատարակենք ամբողջութեամբ, վաղը:

Իրմէ վերջ խօսք առաւ նշանաւոր պատմաբան Պ. Րընէ Կրուսէ որ հակիրճ ակնարկ մը նետելէ ետք Հայոց հին քաղաքական ու մշակութային պատմութեան վրայ, խօսեցաւ Կիլիկիոյ հայ իշխաններուն կողմէ Ֆրանսացի Խաչակիրներու եղած թանկագին օժանդակութեանց մասին եւ թուեց Ֆրանսայի եւ Հայոց քաղաքական ու մշակութային յարաբերութիւններն ու կապերը մինչեւ մեր օրերը:

Բուռն ծափերու մէջ վերջացող այս ներհուն դասախօսութենէն վերջ, Հայ Գրողներու Ընկերութեան նախագահ Պ. Արշակ Չօպանեան ֆրանսերէն ճառով մը եւ թռուցիկ ակնարկներով ներկայացուց հայ բանաստեղծութիւնը, երգն ու երաժշտութիւնը սկիզբէն մինչեւ այսօր, անոնց ինքնատիպ հանգամանքը եւ ֆրանսական մշակոյթին ազդեցութիւնը արեւմտահայ մտաւորականութեան վրայ: Երբ Պ. Չօպանեան կարդաց ներկայ պատերազմին մէջ պատուոյ դաշտին վրայ ինկող երիտասարդ բանաստեղծ Սեմայի եւ Գերմաններու կողմէ նահատակուած Մ. Մանուշեանի քերթուածները, նախագահ Պ. Լըքօնթ հրաւիրեց ժողովուրդը յոտընկայս վայրկեան մը լռութիւն պահել, իբրեւ յարգանք այդ զոհերուն եւ ուրիշներու: Պ. Չօպանեան իր ճառը վերջացուց մաղթելով որ Խորհրդային Միութիւնը եթէ ոչ ամբողջովին, գէթ մասամբ ետ առնէ հայկական հողամասերը, որպէսզի արտասահմանի հայութիւնը համախմբուի իր հայրենի լերան՝ Արարատի շուրջ: Միահամուռ ու խանդավառ ծափեր:

Յետոյ սկսաւ գեղարուեստական բաժինը Սիփան-Կոմիտաս երգչախումբին ծափահարուած հայկական երգերովը՝ առաջնորդութեամբ Պ. Գ. Ալէմշահի:

Օր. Հ. Թորոսեան, Օր. Իրիս Պիւլպիւլեան եւ Պ. Նուրհան Մարգարեան, Պ. Տիրան Ալէքսանեան, Պ. Ֆիլիփ Աղազարեան, Պ. Ռաֆֆի Պետրոսեան, Պ. Յակոբ Յակոբեան բուռն ու կրկնակի ծափերով ողջունուեցան: Տիկ. Արշալոյս Սարգիսեան Զարենցի Հայաստանին արտասանութեամբ, իր արուեստով և յուզումով, գերազանցեց ինքզինքը:

Ամէնէն մեծ խանդավառութիւնը պատճառեց ֆրանսացի երիտասարդ արուեստագիտուհի Օր. Ժանն Պուաթէլ որ արտասանեց խորհրդահայ բանաստեղծներ Գեղամ Սարեանի եւ Ազատ Վշտունիի երկու հայրենասիրական քերթուածները՝ ֆրանսերէնի վերածուած Պ. Ա. Չօպանեանի կողմէ:

Թառիստ Գարեգինի նուագը եւ դեռատի Օր. Րէժին Յովհաննէսեանի հայկական տարազով շնորհագեղ պարերը քնքոյշ կնիքով մը վերջացուցին այս փառաւոր հանդէսը: Լ.

### ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

Ժիռօնտի վրայ կատարուած յարձակումները յաջողութեամբ կը շարունակուին: Ֆրանսական զօրքը Ռուայան մտաւ կիրակի իրիկուն: Քաղաքը աւերակ դարձած է եւ բազմաթիւ հրդեհներ ծագած են: Մեծ է գերիներու թիւը: Յարձակումէն առաջ, քաղաքը ռմբակոծուեցաւ ծովէն եւ օդէն: Թշնամին բռնած էր 56 քիլ. լայնութեամբ եւ 19 քիլ. խորութեամբ տարածութիւն մը:

*** Վերջին լուրի մը համաձայն, Գերմանները յուսահատական հակայարձակում մը կատարած են, ուշացնելու համար Դաշնակիցներու արշաւը դէպի Պերլին: — Հազիւ 50 քիլոմեթր հեռաւորութիւն մը կը բաժնէ ամերիկացի զօր. Հօճսի եւ ռուս մարէշալ Ժուկովի բանակները: Գերման բանակը յուսահատական դիմադրութիւններ կը փորձէ Պերլինի, Լայփցիկի, Համպուրկի եւ Նիւրընպէրկի առջեւ: — Ագարակի մը մէջ գերի բռնուեցաւ մարէշալ Ֆօն Մաքէնզէն, նաեւ Վիլհէլմ իշխանը, որ զաւակն է Վիլհէլմ Բ.ի:



ՎԻԷՆԻ մեր գործակալն է Պետրոս Մանուկեան, 131, Rue Lafayette:

Le Gérant : H. AGONEYAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e

## ԷՋՄԻԱԾԻՆ ԵՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԳԱՂՈՒԹՆԵՐԸ

Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան տեղապահը, Գէորգ արք. Չէօրէքճեան, անցեալ աշնան պատուիրակութիւն մը ղրկած էր Արտասահման։ (Փրոֆ. Աշոտ Աբրահամեան եւ քարտուղարը՝ Անուշաւան Տէր-Գրիգորեան)։ Տեղապահը այս առթիւ տեղեկութիւններ կը հաղորդէ այդ առաքելութեան մասին, «Էջմիածին» ամսագրին մէջ, որ հրատարակուիլ սկսաւ 1944 Յունուարին, իբրեւ «պաշտօնական ամսագիր Հայրապետական Աթոռոյ Ս. Էջմիածնի»։

Պատուիրակին յանձնուած կոնդակին մէջ սահմանուած են իր պարտականութիւնները։

— «Հայաստանեայց առաքելական եկեղեցու նախնի Հայրապետները հեռաւոր համայնքների հետ սերտ կապ պահպանելու նպատակով ուղարկում էին իրենց նուիրակները նրանց մօտ, նրանց մխիթարելու եւ եկեղեցական գործերի վրայ վերահսկողութիւն ունենալու համար։

«1941 թ. ապրիլի 10ին Ս. Էջմիածնում գումարուած ազգային-եկեղեցական ժողովն էլ յանձնարարել է Գերագոյն Հոգեւոր Խորհրդին պարբերաբար ուղարկել լիազօր ներկայացուցիչներ Միութենական Հանրապետութեան եւ արտասահմանի թեմերը ծանօթանալու նրանց իրական վիճակին, հոգեւոր իշխանութեան գործունէութեան, վերահսկողութեան եւ ըստ հարկին ցուցումներ տալու նպատակով։ Այլեւ թեմերի ու Մայր Աթոռի մէջ գոյութիւն ունեցող կապը եւս առաւել խորացնելու եւ սերտացնելու համար եւ այդ բոլորի մասին զեկուցանելու Գերագոյն Հոգեւոր իշխանութեան ի տնօրինութիւն։

«Ներկայումս նկատի առնելով, որ պատերազմի պատճառով դժուարացել է մեր յարաբերութիւնը արտասահմանի հետ, հետեւելով եկեղեցու աւանդական սովորութեան եւ ի կատարումն ազգային-եկեղեցական ժողովի որոշման, Մենք կարգում ենք Ձեզ Մեր եւ Ս. Էջմիածնի ներկայացուցիչ տալով Ձեզ իբրեւ օգնական եւ անձնական քարտուղար Պ. Անուշաւան Տէր-Գրիգորեանին այցելելու Մերձաւոր Արեւելքի հետեւեալ թեմերն ու վայրերը.— Իրանի, Հնդկաստանի, Ատրպատականի, Իրաքի, եւ Եգիպտոսի թեմերը, Ս. Երուսաղէմի վանքը եւ Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութիւնը, հաղորդելով նրանց ղեկավարներին Մեր եղբայրական սիրոյ ողջոյնը եւ Մեր աղօթքը Ս. Էջմիածնի դարաւոր բոլոր սրբութիւններից յիշեալ սրբավայրերի եւ թեմերի ղեկավարներին առողջութիւն եւ կարողութիւն իրենց վրայ դրըուած ծանր եւ պատասխանատու լուծը յաջողութեամբ կատարելու եւ այդ վայրերում ապրող մեր հօտին խաղաղ եւ բարօր կեանք շնորհելու համար»։

Պատուիրակութիւնը այցելելով յիշուած վայրերը, ընդունուած է մեծ խանդավառութեամբ եւ ամէն տեղ զեկուցումներ տուած է Հայաստանի եւ Էջմիածնի կացութեան մասին։ Յառաջիկային պիտի այցելէ նաեւ Եւրոպա եւ Ամերիկա։

*** Կաթող. տեղապահին հրաւէրով բոլոր գաղութներուն մէջ հանգանակութիւններ կը կատարուին երկու տարիէ ի վեր, «Սասունցի Դաւիթ» հրասայլերու շարքին համար։ Մեծ գումարներ փոխադրուած են Էջմիածին, Իրանէն, Ամերիկայէն, Եգիպտոսէն, Սուրիայէն, Լիբանանէն, Կիպրոսէն եւն.։ Փարիզի մէջ ալ Ազգ. Ճակատը ձեռնարկած է հանգանակութեան։

Մոսկուայէն կը հաղորդեն թէ՝ հրասայլերու հրամանատար փոխ-գնդապետ Վոյսկի նամակով մը իր գոհունակութիւնը յայտնած է կատարուած մարտական գործողութեանց մասին։ Գնդապետը կ՚ըսէ.— «Հայ ժողովուրդին առասպելական հերոս Սասունցի Դաւիթի անունը կրող հրասայլերը կը գտնուին վստահելի ձեռքերու մէջ։ Գերման բռնագրաւիչներու դէմ մղուած ճակատամարտներուն մէջ անոնք պսակուեցան անթառամ փառքով»։

## Ձայներ Գաղութէն

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԳՈՐԾԵՐԸ

ՎԻՇԻ.— «Յառաջ»ի այս նեղ սիւնակներուն մէջ կարելի չէ մէկիկ մէկիկ պատկերացնել Կապոյտ Խաչի Վիշիի մասնաճիւղին գործունէութիւնը, որ արժանի է ջերմ գնահատութեան։

Ինչպէս պատերազմէն առաջ, պատերազմի ընթացքին ալ ան չէ դադրած գործելէ։ Մօտ 25 հայ դժբախտ գերիներու անխտիր, բազմաթիւ անգամներ, ուտեստի ծրարներ ղրկած է Ֆրանսական Կարմիր Խաչի գրասենեակի միջոցաւ, բոլոր ծախքերը ինք հոգալով։ Այս առթիւ բազմաթիւ շնորհակալութեան նամակներ ստացած է, մէկը միւսէն յուզիչ։

Մասնաճիւղը օգնած է նաեւ հայ չքաւորներուն եւ գուրգուրանք ցոյց կուտայ դժբախտ հիւանդներուն, որոնք կը մաշին հիւանդանոցներու մոռցուած անկիւնները։ 1944ի գարնան, խումբ մը հայ հիւանդ գերի զինուորներ բերուած էին հիւանդանոցը։ Մեր Կապոյտ Խաչի ժրաջան քոյրերը այդ դժբախտներուն հանդէպ ալ ցոյց տուին իրենց մարդասիրական գուրգուրանքը։ Բազմաթիւ անգամներ այցելեցին բաշխելով զանազան ուտեստներ եւայլ նիւթեր։ Այս ներքին աշխատանքներէն զատ, ունեցած է հրապարակային ձեռնարկներ։ 1942ի դժնդակ օրերուն տուաւ թատերական ներկայացում մը։ 22 Փետրուարին, ներկայացուց «Աշխարհի Դատաստանը»։ Անցած ամսու 25ին, իր նախաձեռնութեամբ ներկայացուեցաւ Արշին Մալ Ալանը, Սէն Շամոնի Մարզական Միութեան թատերախումբին կողմէ։ Մեծ բազմութիւն մը լեցուած էր սրահը։ Մասնաճիւղը միջոցներ կը մտածէ, հայերէնի դասաւանդութիւնները վերահաստատելու համար։ Այս նպատակով իր տրամադրութեան տակ ունի կոկիկ գումար մը։

Գարունի

---

գերիներ բռնուած են Ապրիլի առաջին 16 օրերու ընթացքին։

*** Իտալական ճակատին վրայ, անգլիական եւ ամերիկեան զօրամասերը հետզհետէ կը սաստկացնեն ճնշումը։

### ԴԱՇՆԱԿԻՑՆԵՐՈՒ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՕԴԻՆ ՄԷՋ

Երեքշաբթի օր առաջին անգամ ըլլալով անգլիական, ռուսական եւ ամերիկեան օդաչուները իրարու հանդիպեցան Գերմանիոյ վրայ։ Անգլիացիները եւ Ռուսերը իրար դիմաւորեցին Պերլինի վերեւ։ Ամերիկացիները եւ Ռուսերը նոյնպէս հանդիպեցան Չեխոսլովաքիոյ վրայ ուր ամերիկեան 8րդ օդատորմիղը կը ռմբակոծէր գերման օդակայանները։

Ամերիկեան հազար ռմբաձիգ օդանաւեր, աջակցութեամբ 850 որսկաններու յարձակեցան Տրէզտէնի մօտ եւ Չեխոսլովաքիոյ որոշ կէտերուն վրայ։ Տորմղիկ մը թռաւ Փրակայի հիւսիսակողմը, զարնելու համար քարիւղի ստորերկրեայ մթերանոց մը։

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ Գերմանիա հազար օդանաւ կորսնցուցած է երկուշաբթի օր, ինչ որ օդանաւային ամենամեծ աղէտը կը կազմէ պատմութեան մէջ։ Այլեւս խորտակուած կը համարուի գերման օդատորմիղը, որ այնքան ահուսարսափ կը տարածէր քանի մը տարի առաջ։ Դաշնակից օդանաւերը այս միջոցին կը ծառայեն նաեւ իբրեւ փոխադրիչ գերիներու եւ աքսորականներու։ Մինչեւ երէկ փոխադրած էին 26000 հոգի, —9000 անգլիացի, 7000 ամերիկացի, 10000 Ֆըրանսացի։ Այդ օդանաւերը միեւնոյն ատեն անգնահատելի ծառայութիւն կը մատուցանեն ռուսական ճակատին։

### ԺԻՌՈՆՏԻ ՃԱԿԱՏԻՆ ՎՐԱՅ

Ֆրանսական զօրքը վճռական հարուած մը տալէ վերջ, այժմ կը շարունակէ կռիւը, Ժիռոնտի գերմանական վերջին ամրոցին դէմ։ Տակաւին բազմաթիւ զինուորներ կը դիմադրեն Ռուայանի բերդին մէջ եւ քաղաքին հարաւակողմը։ Գերի բռնուեցաւ այս շրջանին գերման հրամանատարը, ծովակալ Միքէլիս, իր սպայակոյտին հետ։ Ֆրանսացիները այժմ թշնամին կը հետապնդեն Ռուայանի հիւսիսակողմը։ Գերմանները ուժգնօրէն կը դիմադրեն Լա Քուպրի եղեւինի անտառին մէջ։ Ամերիկեան ռմբաձիգ օդանաւեր եւ ֆրանսական մարտանաւեր կ՚աջակցին այս գործողութեանց։ Առջի օր նորէն ռմբակոծուեցան գերմանական դիրքերը, օդանաւերով եւ թնդանօթներով։

### ՀԻՆԳ ՄԵԾԵՐԸ ՊԻՏԻ ԽՈՐՀՐԴԱԿՑԻ՞Ն

Մ. Նահանգներու նոր նախագահը իր առաջին յայտարարութիւնն ընելով մամուլի ներկայացուցիչներուն, ըսաւ թէ ուրախ պիտի ըլլար կարելի եղածին չափ շուտ հանդիպելով հինգ մեծ պետութեանց վարիչներուն։ Նախագահը պիտի չկրնայ մասնակցիլ Սան Ֆրանչիսկոյի խորհրդաժողովին, բայց հաւանաբար անթելով բարի գալուստի ուղերձ մը պիտի ուղղէ պատուիրակներուն, ժողովին բացման առթիւ։

*** Անգլիոյ երեսփ. ժողովին մէջ, Պ. Չըրչիլ ներբողելով հանգուցեալ Ռուզվէլթի գործունէութիւնը, ըսաւ թէ՝ հակառակ իր ֆիզիքական տկարութեան, ան մեռաւ պատնէշին վրայ։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐԱԳՈՅՆ ԱՏԵԱՆԸ երէկ սկսաւ դատել զօր. Տէնցը, երբեմն զինուորական կառավարիչ Փարիզի, երբ Գերմանները Փարիզ մտան 1940 յունիսին, իսկ 1941ին մարզպան Սուրիոյ։ Ատեանը կը բաղկանայ 24 ծերակուտականներէ, երեսփոխաններէ եւ խորհրդակցական ժողովի պատուիրակներէն։ Ամբաստանագիրը կ՚ըսէ թէ զօրավարը օգնած է թշնամի պետութեան շահերուն Մօտաւոր Արեւելքի մէջ, «ապստամբութիւն գրգռելով մեր անգլիացի զինակիցներուն դէմ Իրաքի մէջ եւ օդակայաններ տրամադրելով Գերմանիոյ», թէ պատասխանատու է 1500 Ազատ Ֆրանսացի զինուորներու մահուան՝ եղբայրասպան պատերազմ սարքած ըլլալով այն ուժերուն հետ որ կը հնազանդէին Վիշիի կառավարութեան եւ որոնք նոյնքան մարդ կորսնցուցին։

ՆԱԽԱԳԱՀ ՌՈԶՎԷԼԹԻ անունով պիտի կոչուի Պուլվառ տէ Քափիւսինը, իբրեւ յարգանք հանգուցեալի յիշատակին։

ՓՈՂԵՐԱՆՈՑԸ որոշեց աւելցնել 10 եւ 20 ֆրանքնոց մետաղ դրամներու շրջաբերութիւնը, պղինձի եւ նիքէլի խառնուրդով մը, հրապարակէն քաշելու համար նոյն արժէքով արծաթ դրամները։ Միեւնոյն ատեն հրապարակ պիտի հանուին հինգ ֆրանքնոց դրամներ ալիւմինիոմէ, առ այժմ 40 միլիոն ֆրանք արժէքով։ Ընդհ. գումարը պիտի ըլլար 1,500,000,000, բայց կարելի չէ եղած, արհեստագիտական դժուարութեանց պատճառով։ Մայիսէն սկսեալ ամէն ամիս 100000000 ֆրանքի հինգ ֆրանքնոց պիտի հանուի։

ԼԵՀԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ մասին ծագած վէճերը դեռ կը շարունակուին։ Կ՚ըսուի թէ խզըւած են բանակցութիւնները խորհրդային իշխանութեան եւ Լոնտոնի լեհական կառավարութեան միջեւ։ Անգլիա եւ Ամերիկա առ այժմ յարմար չեն դատեր որ յուզուին այս խնդիրները։

ՊԱՂԵՍՏԻՆԻ անգլիական հոգատարութեան փոխարէն, միջազգային խնամակալութիւն մը հաստատել կ՚առաջարկէ Սըմնըր Ուէլս, Մ. Նահանգներու արտաքին նախարարութեան նախկին խորհրդականը։

---

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱԶԳ. ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (Հ. Ա. Ձ.)

Ա. Տարի Բ. Ներկայացում

Théatre d'Ienaի մէջ, métro: Iéna, 23 Ապրիլ

Երկուշաբթի գիշեր ժամը 7.30ին

կը ներկայացուի Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

ՀԱՅՐԵՆԻՔԸ ՂՕՂԱՆՋՈՒՄ Է

Ա. անգամ Փարիզի մէջ, հայ կեանքէ տռամ, չորս արար եւ մէկ պատկեր։ Երգ, Նուագ եւ պար ռուս ցիկաններու կողմէ։ Վարիչ՝ Տ. Նշանեան, բեմադիր՝ Ա. Շահխաթունի։

Տոմսերը՝ 50էն 200 ֆրանք, սովորական վայրերը եւ ներկայացման օրը թատրոնին կիշէն, ժամը 2էն սկսեալ։ Ներկայացումը կը սկսի ճիշդ ժամը 7.30ին կը վերջանայ 10.30ին։

---

### Վ. ՃԻՆՃԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Ապրիլ 8ին, Էքօլ Նօրմալի սրահին մէջ համակրելի դաշնակահարուհի Օր. Վերոնիկ Ճինճեան նուագահանդէս մը տուաւ, ընկերակցութեամբ ջութակահար Victor Gentilի, նոյնքան տաղանդաւոր։

Նուագահանդէսի մը արժէքը պէտք չէ կարծել թէ միշտ կախում ունի արուեստագէտին նուագելու կատարելութենէն, այլ՝ նկատի առնելու է թէ ինչ աստիճանի արժէք եւ դժուարութիւն կը ներկայացնեն յայտագրին կտորները։ Այս պարագան յաճախ կը վրիպի հասարակութեան ուշադրութենէն։ Կը ճանչնամ արուեստագէտներ որոնք իրենց դիւրին յաջողութիւններ կ՚ապահովեն հրամցնելով միջակ արժէք եւ դժուարութիւն ունեցող կտորներ, զորս նուագելու համար կը բաւէ քիչ մը շնորհ ունենալ։

Վերոնիկ Ճինճեանի պարագան նոյնը չէ։ Յայտագիրը կը պարունակէր երկու sonateները César Franckի եւ Gabriel Fauréի, երկու ալ դաշնակի կտոր նոյնքան բարդ, Bachէն եւ Lisztէն։ Օրաթերթերու ծաւալը նկատի ունենալով, կը հրաժարիմ մանրամասնութիւններ տալէ։ Յայտագրի այս ընտրութիւնը գրաւական մը կը կազմէ երիտասարդ դաշնակահարուհիի ըմբռնումի բարձրութեան։

Վերոնիկ Ճինճեան, որ եղբօր աղջիկն է ծանօթ ատամնաբոյժ Ճինճեանի, լուրջ պատրաստութիւն ունի երաժշտութեան։ 1938ին Մարսէյլի երաժշտանոցի պսակաւոր դառնալէ վերջ, խղճամիտ աշխատանքի նուիրուած է, ինքնամփոփ իր մէջ, առանց շատ հրապարակ գալու։ Մօտ օրէն մեր հասարակութիւնը լաւագոյնս պիտի գնահատէ զինքը, երբ մասնակցի Հայ Երգի օրուան յայտագրին, նուագելով միայն հայկական գործեր։

Ա. Պ.

---

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է ՀԱՅ ԵՐԳԻ ՕՐԸ, որ կազմակերպուած էր Փարիզի Հայկ. երգչախումբին կողմէ, Ապրիլ 29ի համար, միեւնոյն օրը Հայ Ազգ. Ճակատի կողմէ սարքուած համազգային ադահանդէսին պատճառով։ Տեղի պիտի ունենայ Կիրակի, Յունիս 10ին, Կավոյի սրահին մէջ։ Նախապէս գնուած տոմսերը արժէքը կը պահեն։

---

ՄԱՐՍԷՅԼ.— Կիրակի օր, 22 Ապրիլ, Փրատոյի Մայր Եկեղեցիին մէջ տեղի կ՚ունենայ հանդիսաւոր Հոգեհանգիստ Միաց. Նահանգներու նախագահ հանգուցեալ Ֆրանքլին Ռուզվէլթի յիշատակին, ներկայութեամբ հայ եւ օտար պաշտօնական հրաւիրեալներու։

---



PLACE DES FÊTESի մէջ ՅԱՌԱՋ կը ծախուի՝ Maison Laine, 21 Rue des Fêtes:

Le Gérant : H. AGONEYAN

Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e

## ԱՐՏԱՒԱԶԴ ՀԱՆԸՄԵԱՆ

Փետր. 19ին Փարիզի մէջ մեռաւ Արտաւազդ Հանըմեան, նախորդ ընդհ. քարտուղար եւ հիւպատոս Հ. Հ. Պատուիրակութեան։

Ծնած էր 1878ին Սկիւտարի Եէնի Մահալլէ թաղամասին մէջ։ Երկրորդական կրթութիւնը ստացած էր Կեդրոնական վարժարանը։ Մանկութեան եւ պատանեկութեան օրերը անցուց հայրենասիրական - գաղափարական շրջանակի մէջ։ Իննսունական թուականներուն Հ. Յ. Դաշնակցութիւնը կարմիր Սուլթանի մայրաքաղաքին մէջ՝ զապթիէներու եւ խաֆիէներու քթին տակ ստեղծած էր ընտիր գործիչներու փաղանգ մը, կեդրոնական ուժեղ մարմին մը՝ իր կոմիտէներով եւ ենթակոմիտէներով՝ լիազօր Եուսուֆեանի շունչին տակ։ Հոն է որ ի յայտ եկան յայտնի յեղափոխականներ,-Բաբկէն Սիւնի, Վարդգէս, Վռամեան, Վռամ Քէտիրեան, Գնունի եւայլն։ Հանըմեան կը պատկանի անդրանիկ յեղափոխականներու շունչին տակ մեծցած սերունդին։

18 տարեկան պատանի էր, աւարտելով Կեդրոնականը կը մտնէր Պոլսոյ իրաւաբանական համալսարանը, երբ 1896ին տեղի ունեցան Պանք Օթոմանի գրաւումն ու Սամաթիոյ դէպքերը։ Հանըմեան՝ իբրեւ երիտասարդ Դաշնակցական — ինչպէս Կեդրոնականի ամբողջ սերունդը — լրտեսուած եւ հետապնդուած ըլլալով, ստիպուեցաւ անցնիլ արտասահման եւ Փարիզ գալով մտաւ Իրաւաբանական վարժարան։ Յետոյ չուզելով շարունակել, մտաւ քիմիական ինստիտիւտ, որուն ընթացքը աւարտեց քիմիագէտ-ճարտարագէտի վկայականով։

1900ին Փարիզէն մեկնեցաւ Եգիպտոս, ուր Գահիրէի Սուլթանիյէ բարձրագոյն վարժարանին մէջ 15 տարի անընդհատ Աշխատանոցի տնօրէնի պաշտօն վարեց մինչեւ 1916, Եգիպտոսէն մեկնելու թուականը։ Այս պաշտօնավարութեան շնորհիւ եգիպտ. կառավարութիւնը իրեն յատկացուցած էր հանգստեան թոշակ, զոր կը ստանար մինչեւ վերջին տարիները։

Եգիպտոս ապրած շրջանին ազատ ժամերը նուիրած էր ազգային գործերու։ Մեր ողբացեալ ընկերոջ՝ Ստեփան Եսայեանի եւ Լալայեանցի հետ միասին կը հրատարակէր «Լուսաբեր»ը, որ փընտռուած թերթ մըն էր (ետքէն փոխուած «Յուսաբեր»ի, որ ցարդ լոյս կը տեսնէ)։ Իբրեւ հանրային գործիչ, կարեւոր դեր խաղացած է Եգիպտոսի մէջ, ուր իր անունը կը յիշուի միշտ։

1914ին մասնակցեցաւ Հ. Յ. Դ. Կարնոյ ընդհ. ժողովին, իբրեւ պատգամաւոր Եգիպտոսի շրջանին։

Մեծ Պատերազմի ընթացքին Ազգ. Պատուիրակութեան եւ Գահիրէի Ազգ. Միութեան կողմէ Ամերիկա ղրկուեցաւ՝ Միհրան Տամատեանի եւ Սապահգիւլեանի հետ՝ Հայկական Լեգէոնի կազմութեան համար՝ քարոզութիւններ ընելու հայ գաղութին մէջ։ Այս առաքելութիւնը մեծ յաջողութեամբ պսակուեցաւ, հազարաւոր հայրենասէր երիտասարդներ 1915ի ահաւոր եղեռնին վրէժը լուծելու կրակով վառուած՝ կամաւոր արձանագրուեցան եւ եկան Կիպրոս ու Եգիպտոս, ետքէն մասնակցելու համար Պաղեստինի, Սուրիոյ եւ Կիլիկիոյ կռիւներուն։

Ամերիկայէն վերադարձին, Հանըմեան հաստատուեցաւ Փարիզ, ուր պաշտօն ստացաւ Պօղոս Նուպարի Ազգ. Պատուիրակութեան մէջ։ 1919ի Փարիզի Ազգ. Համագումարին մասնակցեցաւ իբրեւ Ֆրանսահայոց պատուիրակ ու երբ Ա. Ահարոնեանի նախագահութեամբ Հ. Հ. Պատուիրակութիւնը եկաւ Փարիզ, Հանըմեան դարձաւ ընդհ. քարտուղար այդ Պատուիրակութեան։ Հմուտ ֆրանսերէնի եւ անգլիերէնի, ընդհանրապէս ինք կը խմբագրէր դաշնակից պետութեանց ներկայացուած բոլոր պաշտօնական գրութիւններն ու վաւերաթուղթերը։ Իբրեւ Փարիզի Հայոց հիւպատոս, ինքն էր որ կը ստորագրէր Հայաստանի Հանրապետութեան անունով տրուած անցագրերը, որոնք մինչեւ 1926 կ՚ընդունուէին բոլոր պետութեանց կողմէ։ Անդամ էր Համազգայինի Վարչութեան։

Հանըմեան յետոյ վարիչ դարձաւ Գաղթականական Օֆիսին, երբ Նանսէնեան հպատակ դարձան Հայերը։ Այս պաշտօնը վարեց մինչեւ 1933, երբ բացաւ իրաւագիտական գրասենեակ մը, զոր պահեց մինչեւ իր մահը։

Գրեթէ տասը տարի էր առողջութիւնը քայքայուած էր և քանիցս ստոյգ մահուընէ ազատած։

Վերջին տարիները անգործութեան դատապարտուած ըլլալով, դարձաւ քարտուղար Արեւելահայ գերիներու ինքնակոչ յանձնաժողովին, ուր դժբախտաբար չկրցաւ իր անցեալին համապատասխան գործ մը կատարել։

Յուղարկաւորութեան առթիւ դամբանականներ խօսեցան Արշակ Զօպանեան եւ Հրանտ - Սամուէլ։

Հ. Ս.

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՃՐԱԳՈՐԾՆԵՐՈՒՆ ՑԱՆԿԸ

Անգլիական կառավարութիւնը անգամ մը եւս յիշեցուցած է չէզոք պետութեանց թէ «պատերազմի ոճրագործ» ըսելով՝ ոչ միայն կը հասկնան անոնք որ խախտած են միջազգային օրէնքն ու սովորութիւնները, այլ եւ այն նացի եւ ֆաշական վարիչները որոնք պատասխանատու են այդ ոճիրներուն առաջնորդող քաղաքականութեան։ Այս յայտարարութիւնն եղաւ երեսփ. ժողովին մէջ։ Պատերազմի ոճրագործներու ցանկ չէ տրուած ոչ անգլիական, ոչ ալ ուրիշ դաշնակից կառավարութեանց կողմէ։ Առ այժմ յարմար չի դատուիր անուններ տալ։ Երեսփոխան մը հարցուց թէ ի՛նչպէս պիտի վարուին չէզոք պետութիւնները, եթէ պատերազմի ոճրագործներ երեւան իրենց սահմաններուն վրայ, քանի որ ոչ անունները գիտեն, ոչ ալ ի՛նչ ոճիր գործած ըլլալը։ Կառավարութեան ներկայացուցիչը պատասխանեց թէ անոնք «ընդհանրապէս պիտի ճանչնան պատերազմի ոճրագործ մը, եթէ մէկն ու մէկը տեսնեն։ Իսկ եթէ չճանչնան, մենք ուրախ պիտի ըլլանք տեղեկութիւններ հաղորդելով»։

*** Մ. Նահանգներու երեսփ. ժողովը քուէարկեց պատերազմի ոճրագործներու օրէնագիծը զոր մշակած էր Քալիֆորնիոյ ռամկավար ներկայացուցիչը, Պ. Քինկ։ Այս ծրագրով, կը պահանջուի որ Միացեալ Ազգերը համաձայնին հետեւեալ կէտերուն վրայ.— 1. Ապահովել պատերազմի ոճրագործներու անձը, ուր ալ ըլլայ անոնց թաքստոցը։ — 2. Պատիժ տնօրինել առանց նկատի առնելու ամբաստանեալին աստիճանը, դասակարգը, պաշտօնը։ Ամբաստանեալը կրնայ ըլլալ վեհապետ, գործարանատէր կամ սեղանաւոր, ինչպէս եւ զինուոր կամ սպայ։— 3 Պատժել պատերազմի բոլոր ոճրագործները, իրենց ծագումը զինուորական ըլլայ, քաղաքական թէ տնտեսական։ Վերջապէս, չքմեղանք չնկատել հրամանի մը համաձայն շարժած ըլլալու պարագան։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ ոստիկանական տեսուչ Տավիտի փաստաբանը, Լուի Կիթառ, իբրեւ մեղսակից վերջերս երեւան հանուած դաւադրութեան։

ՄԱՅԻՍ 1ԻՆ բոլոր աշխատանքները պիտի դադրին, համաձայն աւանդական սովորութեան։ Բայց որպէսզի պատերազմի եւ վերաշինութեան ճիգը չթուլնայ, ձեւ մը պիտի գտնուի, կորսուած ժամերը լեցնելու համար։

ՀԱԶԱՐԱՒՈՐ ՕՏԱՐ ԲԱՆՈՒՈՐՆԵՐ դէպի Զուիցերիոյ սահմանագլուխը կը խուժեն, օգտուելով հիւսիսային - արեւմտեան Գերմանիոյ վարչական կազմին խորտակումէն։ Գերման իշխանութիւնները այլեւս չեն կրնար արգիլել այս հոսանքը։

ՆԱԽԿԻՆ ՎԱՐԺԱՊԵՏ ՖԼԱՆՏԷՆ, որ բանտարկուած էր Ֆրէնի բանտին մէջ, իբրեւ մեղսակից Փէթէնի, առժամապէս արձակուելով դարմանատուն մը փոխադրուեցաւ։

**2,430,000 ՀԱՒԿԻԹ** հասաւ Փարիզ, նախապատերազմեան օրերը յիշեցնելով։— Օրուան պարենաբաժինը՝ 250 կրամ արմաւ, 40 կրամ իւղոտ պանիր, 100 կրամ մարկարին։

ՊԱՊԸ նամակ մը ուղղելով աշխարհի կաթոլիկ եպիսկոպոսներուն, յանձնարարեց որ «բոլոր քրիստոնեաները եւ մասնաւորապէս մանուկները աղօթեն, որպէսզի Աստուած խաղաղութիւն պարգեւէ, արդարութեան եւ գթութեան դրօշին տակ»։

ւան մայրաքաղաքին մէջ։ Ժամէ ժամ չոնդալից լուրի մը կը սպասուի Մոսկուայէն։ Ռուսական գրոհը կը բռնէ 150 մղոն տարածութեամբ ճակատ մը՝ արեւելեան Գերմանիոյ կողմը, հիւսիսէն հարաւ։ Անհամբեր կը սպասուի Սթալինի պաշտօնական զեկոյցին՝ ճակատի գործողութեանց մասին։ Մինչ այդ, անհամար զրոյցներ կը շրջին Մոսկուայի մէջ։ Լուրի մը համաձայն, Ռուսերը կը ջանան Պերլինը զարնել հիւսիսէն եւ միանալ անգլիացի մառէշալ Մոնթկոմըրիի զօրքին որ դիրք բռնած է ստորին Էլպայի վրայ։ Այս բանակին մէկ թեւը այժմ 15—20 մղոն միայն հեռու է Համպուրկէն, իր «անապատի առնէտ»ներով։ Գերմանները կրակի կուտան զանազան քաղաքներ, խափանելու համար ճամբան։

### ՈՒՐԻՇ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԴԷՊՔԵՐ

Ամերիկեան 7րդ բանակին զինուորները Նիւրընպէրկ մտան չորս տարբեր կէտերէ եւ այժմ կատաղօրէն կը կռուին, խորտակելու համար դիմադրութիւնը նացիականութեան երբեմնի միջնաբերդին մէջ։ Ամերիկացիները կը կռուին նաեւ Լայփցիկի մէջ որ պաշարուած է։ Աւելի դէպի արեւելք, ամերիկեան զօրամասեր հետզհետէ կը մօտենան Տրէզտէնի եւ շատ հեռու չեն ռուս մառէշալ Կոնիեւի բանակէն։ Ամերիկեան Ա. բանակը գրեթէ լրացուցած է Հալլէի գրաւումը, իսկ ֆրանսական զօրքը շատ հեռու չէ Շթութկարտէն։ Հոլանտայի մէջ, քանատական զօրքը Ամսթէրտամի վրայ կը քալէ։ Գերմանները նոր տարածութիւններ ողողեցին արեւմտեան շրջանին մէջ։ Տեսակ մը մրցում սկսած է քանատական զօրքին եւ ողողումներուն միջեւ։ Ներկայ ընթացքով, Քանատացիները պիտի կրնան անցնիլ ողողուած շրջանները, ջուրերու բարձրանալէն առաջ։

Հիւսիսային ծովուն մէջ, Էմտէնի նաւակայանին գերման նաւաստիները լուր չունենալով անցուդարձէն, կը կարծէին թէ իրենց պաշտօնն է թըշնամին հեռու պահել հայրենիքէն։ Դաշնակիցները թռուցիկներ ձգեցին օդանաւերով, պարզելով կացութիւնը, բայց դիմադրութիւնը կը շարունակուի Էմտէնի եւ Վիլհէլմահաֆէնի մէջ։

Ռուրի շրջանին մէջ, միայն մէկ խորշ մնացած է ուր Գերմանները կը դիմադրեն տակաւին (Տիւսէլտորֆի մօտ)։ Այս շրջանին գերիներու թիւը հասած է 300000ի։ Երկուշաբթի օր Դաշնակիցները 112033 գերի բռնեցին, կոտրելով մրցանիշը, համաձայն զօր. Այզընհաուըրի զեկոյցին։ Արեւմտեան ճակատի արշաւանքէն ի վեր (6 Յունիս 1944) բռնուած գերիներուն թիւը կը հաշուեն 2,055,565 հոգի։ Նիւրընպէրկի մօտակայ արգելարանէն ազատուեցան 13000 դաշնակից հպատակներ, զինուոր թէ քաղաքացի։

Փարիզի անթելը առջի օր հաղորդեց թէ 25 ժամուան զինադուլ մը կնքուած է Տէօնքէրքի մէջ, որպէսզի 200 քաղաքացիներ կարենան հեռանալ վտանգաւոր շրջանէն։

### ԺԻՐՈՆՏԻ ՃԱԿԱՏԻՆ ՎՐԱՅ

Ժիրոնտի ճակատին վրայ, Գերմանները դէպի ծով քշուած են։ Ֆրանսացիները կը կռուին ծուխ ու մուխի մատնուած անտառներու մէջ։ Աւելի քան 6000 Գերմաններ գերի բռնուեցան։ Օդանաւերը եւ թնդանօթները կը շարունակեն կրակ տեղալ գերմանական մնացեալ դիրքերուն վրայ։ Ատլանտեան Պարիսպին ամէնէն ահարկու ամրութիւններէն մէկը Ֆրանսացիներուն ձեռքն անցաւ չորեքշաբթի օր, երբ 700 գերման զինուորներ եւ սպաներ խմբովին անձնատուր եղան զօր. Լըքլէռի Բ. զրահապատ զօրաբաժնին։ Այս անձնատուութեամբ Ֆրանսացիները ետ առած եղան ամբողջ հիւսիսային հրուանդանը, Ժիրոնտի գետաբերանին վրայ։ Բռնուելով ծովուն եւ բոցավառ անտառներուն միջեւ, այս ամրացեալ դիրքին հրամանատարը, ծովային հարիւրապետ մը, հաւանեցաւ անպայման անձնատուր ըլլալ, եւ իր զինուորներուն հետ անցաւ հրակէզ անտառին մէջէն։ Ֆրանսացի հրամանատարը, իբրեւ յարգանք իրենց յուսահատական պայքարին՝ գերազանց ուժերու դէմ, հրամայեց իր զինուորներուն շարուիլ ճամբուն վրայ եւ բարեւի կենալ։ Ուրեմն գերման սպաները դուրս ելան իրենց համազգեստներով եւ զէնքերով, բացի ռազմանիւթէ։ Ֆրանսացիները այս պատիւն ընելով, կը յուսան առանց արիւնահեղութեան ետ առնել մնացեալ դիրքերը, Ատլանտեանի ափերուն վրայ։

Թերթերը կը գրեն թէ գետաբերանին հիւսիսային խորշը իսկապէս բերդ մըն էր բերդի մը մէջ։ Արտաքին ամրութիւնները ծածկուած էին ականներով, փոքր այլ տոկուն ամրոցներ շինուած էին ճամբաներուն վրայ եւ փոսերու մէջ եւն.։

ԶՕՐ. ՏԷՆՑԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ կը շարունակուի դեռ, Գերագոյն Ատեանին առջեւ։ Տեղի անձկութեան պատճառով, կարգ մը նշանակալից պարագաներ պիտի հրատարակենք վաղուան թիւով։ Զօրավարը 63 տարեկան է, եւ զանազան խոստովանութիւններ ըրաւ։

ՍԱԿԱՐԱՆԻ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐՈՒ գործադուլը վերջացաւ, գոհացում տրուած ըլլալով եղած պահանջներուն։

ՄԻՀՐԴԱՏ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ ընտանիքը ՏԻԿԻՆ ՄԱՌԻ ՄԵՆՋԻԼՃԵԱՆի մահուան առթիւ կը նուիրէ 250 ֆրանք Փարիզի Աղքատախնամին։ Ստանալ «Յառաջ»էն։



ՓԱՐԻԶԻ ԵՒ ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐՈՒ բոլոր հայ ռազմիկները՝ որոնք ֆրանսական բանակին մէջ ծառայած են, կը հրաւիրուին Բ. խորհրդակցական ժողովին Կիրակի, 22 Ապրիլ, ժամը ճիշդ 14.30ին, Mutualitéի G սրահին մէջ, 24, Rue St. Victor, Paris (5), Métro Maubert - Mutualité կամ Jussieu։ Օրակարգ.— 1. Կազմակերպուելու անհրաժեշտութիւն։ 2. Հայ ռազմիկներու անտեսուած իրաւունքներու պաշտպանութիւն։ Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։



Le Gérant : H. AGONEYAN
**Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e**

